**1917** № 36—ՆՈՅԵՄԲ.-ի 5 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարւում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՊԷՏՔ Է ՍԹԱՓՈՒԵԼ

Ռուսաստանի քաղաքական կեանքը մտել է շատ լուրջ ու պատասխանատու շրջան։

Ռուսաստանը քայքայման ու կործանման ճանապարհի վրայ է։

Բոլշեւիկների քաղաքական գործելակերպը ստեղծեց մի աղէտ ամբողջ Ռուսաստանի համար։

Բոլշեւիկների ազատ քարոզները զօրքերի ու ագէտ ամբոխի մէջ՝ ընդդէմ պատերազմի, նրանց երազային խոստումները՝ անմիջապէս ընդհանրացնել հողը, կապիտալը և աշխատանքի գործիքները, նրանց յայտարարած կռիւը ունեւորների և սեփականութեան դէմ,—մտցրեց ոչ թէ միայն մտքերի յեղաշրջում և հասկացողութիւնների խառնաշփոթութիւն, այլ և առաջ բերեց ակտիւ՝ բայց կործանիչ գործողութիւններ, որոնց պտուղները այժմ ամենքի համար ակներև են։

Բաւական չէր այն անթիւ զոհերը, որը տուել է և տալիս է Ռուսաստանի ազգաբնակութիւնը պատերազմի դաշտում, ներկայումս մենք հանդիսատես ենք մի յուզիչ տեսարանի՝ թէ ինչպէս նոյն ժողովուրդի հարազատ զաւակները սկսել են միմեանց արիւն թափել, միմեանց կոտորել։

Բոլշեւիկները բռնի կերպով յափշտակեցին Պետրոգրադի պետական բարձր իշխանութիւնը և իրենց գաղափարական հակառակորդներին յայտարարեցին քաղաքացիական պատերազմ, ներկելով Պետրոգրադի փողոցները մարդկային արիւնով։ Պետրոգրադի բոլշեւիկների օրինակին հետեւեցին Ռուսաստանի նրանց գաղափարակիցները։

Ռուսաստանի միւս քաղաքներում բռնկուած եղբայրասպան կռիւը տարածւում է ամբողջ Ռուսաստանում և դժբաղդաբար այն ժամանակ, երբ զրահաւորուած թշնամին՝ Գերմանիան, կանգնած է մայրաքաղաքի դռանը և սպառնում է ներս մտնել և երբ Ռուսաստանը գտնւում է Սահմանադիր Ժողովի նախօրեակին, որը պէտք է լինի ժողովրդի կամքի արտայայտիչը։

Գերմանիան կօգտուի այս հանգամանքից և կաշխատի մահացու հարուած հասցնել Ռուսաստանին, եթէ միայն նրա ժողովուրդը չը սթափուի, եթէ այդ ժողովուրդի մէջ

*չզարթնի պարտաճանաչութեան զգացմունքը հայրենիքի առաջ։*

*Այս մեծ հրդեհի բոցերը այսօր կամ վաղը ամենայն հաւանականութեամբ կարող են անցնել Կովկասեան լեռնաշղթայով և մեր երկիրը, ուր նոյնպէս կարող է սկսուել արիւնահեղ ներքին կռիւ, որի հետևանքները գուցէ աւելի սարսափելի լինեն, քան թէ Ռուսաստանում։*

*Կովկասի ազգերը, պէտք է խոստովանել, մինչև օրս պահել են իրենց օրինակելի կարգապահութիւնը և իրենց քաղաքական հեռատեսութեամբ ու տակտով գերազանցել են Ռուսաստանի բնիկ ժողովրդին։*

*Սակայն այժմեան հանգամանքները բացառիկ են։*

*Ներկայումս չկայ (ի հարկէ ժամանակաւորապէս) պետական բարձր իշխանութիւն, չկայ քաղաքացիական և զինուորական ոյժ, որը, մեր երկիրը կառավարելու և կարգ պահպանելու համար արձակէր հրամաններ, հիմնէր օրէնքներ և կատարել տար, որը ներշնչէր կեանքի և գոյքի ապահովութիւն, որը, վերջապէս, պատերազմական ճակատը պաշտպանէր և հարկաւոր դէպքերում նոր զինուորական ոյժեր պահանջէր Ռուսաստանից։*

*Այժմ Անդրկովկասի ազգութիւններին է մնացել, որ նրանք իրենց ոյժերով հոգան իրենց վիճակի մասին, աջակցելով և ճակատի զօրքին։*

*Այդ ազգութիւնները պէտք է իրենք առաջն առնեն ամեն մի վտանգի—լինի այդ ներսից, թէ դրսից—միևնոյն է։*

*Խնդիրը շատ լուրջ է։ Անդրկովկասի ազգաբնակութիւնը պէտք է խորապէս գիտակցի, որ իրանից է կախուած իր փրկութիւնը և կործանումը։*

*Այդ ազգաբնակութիւնը, չնայած իր բազմացեղութեան և բազմալեզու լինելուն, այս մեծ պատմական րոպէին պէտք է գտնի միմեանց հասկանալու համար մի լեզու. Նրա տարբեր ազգերը, խաւերը, կուսակցութիւնները և հոսանքները պէտք է մոռացութեան տան իրենց մէջ եղած և գուցէ գոյութիւն ունեցող տարաձայնութիւնները, անախորժութիւնները, վէճերը և հաշիւները, կանգնելով ընդհանուր շահերի և պետական տեսակէտի վրայ. Նրանք պէտք է համախմբուեն, իբր մի ընտանիքի անդամներ, և խստիւ պահպանեն կարգ ներսում և քաջութեամբ պաշտպանեն զօրքի հետ պատերազմական ճակատը թշնամու ներս խուժելուց։*

*Ահա թէ ինչ պայմաններում Անդրկովկասը կարող է ազատուել վտանգաւոր անակնկալներից։*

*Անհրաժեշտ է, որ մեր երկրում ապրող գլխաւոր ազգերը՝ ռուսները, հայերը, վրացիներն ու թուրքերը համախմբուեն ու կազմեն մի ոյժ՝ համերաշխ և ներդաշնակ գործելու, յանուն ընդհանուրի պաշտպանութեան և բարօրութեան։ Եթէ ամեն մի ազգ ձգտի գործել առանձին, մտածելով միայն իրա գոյութեան համար, չարաչար սխալուած կը լինի ու վտանգաւոր ճանապարհի վրայ կանգնած. Նրա ոյժերը թոյլ կը լինեն այն կուտակուող սարսափների առաջ, որոնց նշանները արդէն նկատւում են։*

*Իսկ եթէ յիշեալ ազգերը միանան, նրանք հսկայական ոյժ կը կազմեն դիմադրելու ամեն մի չարիքի։ Այս դրութեան հետ պէտք է հաշտուել, մինչև որ Ռուսաստանում վերականգնի կարգը և վերահաստատուի օրինաւոր կառավարութիւնը։ Անդրկովկասի փրկութիւնը այդ երկրում ապրող ազգերի անկեղծ համերաշխութեան և եռանդուն համագործակցութեան մէջ է։*

*Պէտք է սթափուել, պէտք է գիտակցել այս ճշմարտութիւնը։*

*Վտանգը հեռու չէ...*

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

---

# ԱՆՑՔԵՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

*Ինչպէս երևում է հեռագիրներից, բոլշևիկական շարժումը դեռ խեղդուած չէ։ Մոսկուայի ու Պետրոգրադի փողոցներում կռիւները շարունակւում են։ Մոսկուայում անկազմակերպ ամբոխը, յեղափոխական կոմիտէի թելադրութեամբ կռւում է Ժամանակաւոր Կառավարութեան կողմնակիցների դէմ։ Բոլշևիկական շարժումը ստացել է ամբոխային բնոյթ. հասարակ զինուորների և բանուորների մի մասը ակտիւ կերպով մասնակցում է այդ շարժման։*

*Ամենից սոսկալին այն է սակայն, որ գերմանացիները, քաջ իրազեկ մեր ներքին դէպքերին, հոկտ. 30-ին սաստիկ թնդանօթային պատրաստութիւնից յետոյ, դիմեցին յարձակման ճակատի բանակներից մէկի աջ թևի վրայ և գրաւեցին մեր խրամատների առաջին գիծը։ Մանրամասնութիւններ և յետագայ յարձակումների մասին տեղեկութիւններ դեռ չկան. ամեն պարագայի տակ գերմանացիք այս լաւագոյն առիթը իրենց ձեռքից բաց չպիտի թողնեն։*

*Կոզակ զօրամասերը ի նպաստ Ժամ. Կառավարութեան են արտայայտւում։ Գեն. Դուխոնին հաղորդում է, որ Պետրոգրադ մի զրահապատ գնացք է ուղարկուել Կերենսկուն օգնելու համար։ Նաւատորմի կենտրոնական մարմինը կալանաւորուած է մեծամասնականների կողմից և ուղարկուած Կրոնշտադ։ Պետրոգրադի զօրամասերում նկատւում է պառակտում։ Ազգաբնակութեան թշնամական տրամադրութիւնը բոլշևիկների դէմ օր աւուր աճում է և ստանում գայրոյթի բնոյթ։ Ցարսկոյէ-Սէլոյի զօրաբանակը անձնատուր եղաւ կառավարական զօրքին։ Լենինը հրովարտակ է հրատարակել, որի մէջ յայտնում է, որ առայժմ չի կարելի հաշտութիւն կնքել և խոստանում է հողը յանձնել ժողովրդին։*

Լոյս են տեսնում միայն մեծամասնականների թերթերը. սոցիալիստ մինիստրները արձակուել են բանտից։

Պետրոգրադը կտրուած է ամբողջ Ռուսաստանից և նրան սով է սպառնում. հաց չկայ. զինուորները խուժում են տները, կողոպտում և ամեն ինչ տանում։ Պետրոգրադի օտարերկրեայ դեսպանները դեռ մնում են և սպասողական դիրք են բռնել։

Կովկ. Հանրային Ապահովութեան Կոմիտէն յայտնում է, որ կովկասեան բանակի կոմիսար Դոնսկոյը ստացել է գերագոյն հրամանատարի պաշտօնակատարից մի հեռագիր, որ հաղորդում է.

Նոյեմբերի 1-ին գեն. Կրասնովի զօրքերը, որ հաւաքուած են Գատչինոյի մօտ, Պետրոգրադի գարնիզոնի հետ զինադադար են յայտարարել, որ կանխեն արիւնհեղութիւնը և քաղաքացիական կռիւը։ Գեն. Կրասնովի հաղորդագրութեան համաձայն, Կերենսկին թողել է իր զօրամասը և յայտնի չէ թէ որտեղ է գտնւում։ Այդ պատճառով ինքը գեներալը ժամանակաւորապէս յանձն է առել գեր. հրամանատարութեան պաշտօնը. Նա հրամայել է զօրքերին կանգնեցնել առաջխաղացութիւնը Պետրոգրադի առաջ։ Ներկայումս զանազան քաղաքական կուսակցութիւնների միջև տեղի են ունենում բանակցութիւններ ժամ. Կառավարութիւն կազմելու նպատակով։ Սպասելով ճգնաժամի լուծման՝ գերագոյն հրամանատարի պաշտօնակատար Դուխոնին հրամայում է ճակատի զօրքերին մնալ իրենց դիրքերում և կատարել իրենց պարտականութիւնը։

Նոյեմբերի 2-ին պոստ-հեռագրատան միութեան կենտրոնական կոմիտէն դիմել է բոլոր պոստ-հեռագրական հիմնարկութիւններին հետեւեալ շրջաբերականով. «Ընթէ բոլշևիկները շարունակեն պոստ-հեռագրական կայանները բռնագրաւելու քաղաքականութիւնը, բոլոր ծառայողները պէտք է պատրաստ լինեն յայտարարելու ընդհանուր գործադուլ։ Զօրաբանակի պոստն ու հեռագիրը և հեռախօսը հիւսիսային ճակատում, շարունակում է մնալ մեր ձեռքում և մեր հսկողութեան ներքոյ։ Բոլշևիկները ժամանակաւորապէս գրաւեցին դաշտային հեռագիրը Վէնդէնում և Վիտեբսկում, բայց ձեռք առած միջոցներով մեր ձեռքն անցաւ։ Հիւս. ճակատի կորպուսի հրամանատարը որոշեց միանալ հայրենիքի և յեղափոխութեան փրկութեան կոմիտէին։

Հայրենիքը և յեղափոխութիւնը փրկող մի համառուսական կոմիտէ է կազմուել, որ կոչերով դիմում է ազգաբնակութեան և զօրքին՝ պաշտպան կանգնել կառավարութեան և հայրենիքին»։

## ԿՈՐ ԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ ԿՈՂՄԻՑ

Հայրենակիցներ,

Սեպտեմբերի 27-ին Թիֆլիսում գումարուած Հայոց Ազգային Խորհրդաժողովի որոշման համաձայն, կազմուած է 1) Ազգային Ժողով, որի քննութեան և վճռահատութեան ենթարկւում են հայ կեանքի առաջադրած խնդիրները և 2) Ազգային Խորհուրդ, որ ստանձնում է ազգային բոլոր գործերի գերագոյն ղեկավարութիւնը, որպէս գործադիր մարմին։

Թէ մէկը և թէ միւսը կազմակերպուած են ազգային խորհրդաժողովի գծած սահմաններում և բոլոր գործօն կուսակցութիւնների ու չէզոք տարրերի մասնակցութեամբ համագործակցութեան սկզբունքով։

Ազգային Խորհուրդը պատասխանատու և հաշուետու է Ազգային Ժողովի առաջ, որ պարբերաբար պիտի գումարուի Թիֆլիսում իր հրահանգիչ և վերահսկիչ ֆունկցիան իրագործելու համար։

Ազգային Խորհուրդը իր գործունէութեան կէտ նպատակ ունենալով հայ ժողովրդի շահերը՝ միաժամանակ պիտի ճգնի այդ շահերը ներդաշնակել ռուսական մեծ դեմոկրատիայի և մեր բոլոր հարեւանների նոյնպիսի շահերի հետ՝ միշտ առաջնորդ ունենալով մի կողմից առողջ պետականութեան և միւս կողմից ժողովուրդների եղբայրութեան և ազատութեան բարձր սկզբունքները։

Խորապէս գիտակցելով իր յանձն առած պարտքի բոլոր լրջութիւնն ու ծանրութիւնը՝ Ազգային Խորհուրդը վստահ է, որ հայ ժողովրդի բոլոր խաւերի անվերապահ ու հզօր աջակցութիւնը նրան երբէք չի պակասի։

Հայրենակիցներ. փորձութիւններով հարուստ ու տագնապալի այս օրերում, երբ ամեն օր դաժան անակնկալներ կարող են ի դերև հանել ստեղծագործական լաւագոյն իղձերն ու ճիգերը, հայ ժողովրդի բոլոր կենդանի ուժերի համերաշխ գործակցութիւնը դառնում է գերազանցապէս հրամայական։

Պատրանքների տեղ չկայ։ Մեր կեանքի կարիքը, աղէտն ու աւերը անսահման է, պէտք է որ անսահման լինի նաև մեր զոհաբերութեան պատրաստակամութիւնը։

Այս դժուարին օրերին, Ազգային Խորհուրդը դիմում է հաւատով հայ ժողովրդի առողջ բնազդին, քաղաքական իմաստութեանը և հինաւուրց կորովին և նոյն խորունկ հաւատով է, որ նա առանց վարանումի ու տարակուսանքի վճռապէս ձեռնարկում է շինարարական աշխատանքի՝ յենուած գիտակից հայութեան վստահութեան, ինչպէս և նրա բարոյական ու նիւթական կուռ աջակցութեան վրայ։

Հայոց Ազգ. Խորհուրդ

## ԳՐԱԿԱՆ ԲԱՐԵԿՐԹՈՒԹԻՒՆ

Ժողովրդական մեծ ցնցումների, հասարակական աղէտների և կամ խոշոր անցքերի օրերին, երբ մարդկային խոհերն ու զգացմունքները ամբողջովին համակուած են կեանքի անմիջական իրադարձութիւններով, երբ անասելի արագութեան է հասնում դէպքերի յաջորդականութիւնը և ժամանակ ու տրամադրութիւն չի մնում իրականութիւնից դուրս մի վայրկեան անգամ երազելու—այդպիսի պատմական օրերին գեղարուեստի մա-

*սին մտածել, գրական կեանքի ձգտել և արուեստի որևէ արտադրութիւն որոնելը՝ կը լինէր ապարդիւն։*

*Եւ յիրաւի, գեղարուեստը, առ հասարակ այն ամենը, ինչ արդիւնք է խորունկ խորհրդածութիւնների, ապրումների և երազանքների—ծնւում է, ուռճանում և կեանքի մէջ իր տիրապետութիւնը ձեռք բերում՝ միմիայն անդորր օրերին և երկարատև խաղաղութեան պահերին։*

*Պատերազմները, եթէ նրանց ահաւոր բոցը լափելու է գալիս կեանքը ամբողջովին, եթէ նրանց ցնցումները տակն ու վրայ են դարձնում բնականոն ընթացքը և նախճիրներով ու աւերածութիւններով ողբ ու կական սփռում իրենց շուրջը.*

*Համաճարակները, եթէ այլևս աղէտալի են դարձնում կեանքը իրենց կատաղի արշաւանքներով, սովը, երաշտը նոյնիսկ, ընդունակ են, իրենց տևողութեան ընթացքի չափով, ընդհատել, յաճախ նոյնիսկ ոչնչութեան հասցնել ամէն գեղարուեստական շարժում, գրական որ և է քայլ։*

*Այդ բոլորը սակայն չեն կասեցնում և չեն բնաջնջում արուեստի ընթացքը այն աստիճան, որքան կտրուկ շարժումով և վերագնահատումի լայն հարուածներով՝ գրական ասպարէզի և գեղարուեստական քայլերի մէջ փոփոխութիւն է մտցնում յեղափոխութիւնը։*

*Յեղափոխութիւնը, եթէ մանաւանդ՝ վրայ է հասնում հսկայ թափով—ահագին ցնցումով մաքրելու է եկնում Աւգէոսեան ընդարձակ ախոռները հասարակական կեանքում. եթէ մանաւանդ՝ նրա շարժումների շունչի առաջ իրար ետևից, արագ յաջորդականութեամբ, տապալւում են բոլոր կուռքերը, ոսկեայ հորթն ու բորբոսնած աւանդականութեան դղեակները. եթէ մանաւանդ նրա մեծ ու մաքրիչ հովը քամուն է տալիս «նուիրականութեան» դիմակի տակ թագնուած բազմադարեան այնպիսի կաշկանդիչ հաստատութիւններ, որոնք անխնայ կտրատում էին ամէն թըռչող թև, ամէն վազող ոտք և սպանդանոց քշում ամէն ոստնող փորձ.*

*Յեղափոխութիւնը, այնպիսի արմատախիլ շարժումներով, ինչպիսին ֆրանսիականն էր 18-րդ դարի վերջերին և ինչպիսին ռուսականն եղաւ այս տարուայ փետրուարի օրերին—այդպիսի մեծ յեղաշրջումները, իրենց սկզբնական օրերին (որոնցից իւրաքանչիւրը ամիս պիտի հաշւել) դեռ միմիայն զբաղւում են հին արժէքների տախտակները մաքրելով, որպէս զի նրանց վրայ գրուին նոր արժէքներ ու նոր մտածութիւններ։*

*Յեղափոխութիւնը չափազանցօրէն արագացնում է կեանքի ընթացքը։ Եւ, իր արագութեան մէջ, իր յարաճուն պտոյտի մէջ, ի մի է ձուլում ամէն գունագեղութիւն։ Ֆրանկլինի պտուտակն է դա։ Գիտենք, որ սպեկտրի գոյների արագ պտոյտով՝ բոլորը վերածւում են սպիտակի։ Այդպէս է նաև Յեղափոխութեան օրերին. կատաղօրէն արշաւող դէպքերն ու շարժումները ի մի են ձուլում կեանքի բոլոր արտայայտութիւնները և նրանց նուրբ ու գեղեցիկ այլազանութիւնները։ Ամէնքը և ամէն ինչ սրնթաց պտոյտներով խառնւում են իրար և միմիակ մտածութիւն, մի միակ զգացմունք երևան հանում։ Այլևս ոչ ոք չի գտնում ժամանակ, տրամադրութիւն և նոյնիսկ ցանկութիւն՝ մտածելու ինքնատիպ գոյների մասին։ Իրականութիւնը—ինքը այնպիսի ցնցումներ և այնպիսի գունագեղութիւններ է հրապարակ նետում, որ ամէն արուեստ պարտաւորուած է ելնել ասպարէզից և տեղ բաց անել իրական կեանքի այդ մեծ վէպին, դրամային, այդ վսեմ ու շքեղ ողբերգութեանը։*

*Կեանքը ինքն է, որ այժմ դառնում է արուեստ, վէպ, դրամա կամ պօէմա։ Ո՞վ կարող է, ձիգ է այն, որ կարողանայ ստեղծագործել՝ կեանքի մէջ այս օրերին և այնքան կենդանի կերպով տեղի ունեցող դրամայի պէս դրամա, վէպից աւելի լաւ վէպ և կամ այդքան շքեղ, այդքան դիւցազնօրէն մեծ ողբերգութիւն։*

*Ո՛չ ոք։ Կեանքն է այժմ, որ ստեղծագործում է։ Կեանքն է, որ արուեստում է, կերտում. կեանքն է, որ հնչում է և իր երգի ձայնն ու վրձինի շարժումները պերճօրէն դրոշմում պատմութեան էջերի վրայ։*

*Բնական է ուրեմն, որ պիտի լռէր այն ամէնը, ինչ միմիայն պատկերացնել էր ձգնում այս, այժմ իսկ կատարուող, մեր աչքի առաջ գունագեղութեամբ տարածուող իրականութիւնը։ Բնական է ուրեմն, որ «ձևերի հարցը» ետ է քաշւում ստուերի մէջ. որովհետև ներկայ թոհն ու բոհը ոչ ձևերի հարց է ճանաչում, ոչ նրա բաժանումները և ոչ նժարը։ Նա կեանքը ինքն է. աւելի մեծ ու աւելի հսկայ՝ քան ամէն ձև, ամէն նժար։ Նա Մեծ Ոչինչն է, որի մէջ սակայն Ամէն ինչն է և ամէն ինչ կայ։*

*Բայց ամէն թափ մեղմանալու է ենթարկւած՝ այսօր չէ գոնէ վաղը։ Երբ իրականութեան մէջ դրաման իր հանգոյցին հասնի և իջեցնի իր վերջին արարուածի վարագոյրը—այդ ժամանակ ահա պիտի ասպարէզ գայ արուեստը՝ բացատրելու շատ բան, վերագնահատելու շատ երևոյթ, պարզելու և պատկերացնելու իրականութեան ամէն մի շրջանը։*

*Դեռ շուտ է։ Դեռ կայ և մնում են իրարանցման այլանդակութիւնները, դեռ հրապարակները լի են աղմկողներով ու շատախօսներով. դեռ ամէն յեղափոխութեան ժամանակ անխուսափելիօրէն ծնունդ առնող գինովութիւնը՝ ասպարէզի վրայ է իջեցնում մտքի, խօսքի և զգացմունքների արտառոցութիւններ, առատ գեղումներ, նոյնիսկ գրական այնպիսի արտայայտութիւններ, որոնց վիճակւած է յաճախ միօրեայ կեանք միայն։ Մի չնչին կայծ, մի բոց, մի պայթիւն—ով կարողանում է՝ արտադրում է և արձակում բերնով, գրչով, շարժումներով։ Ասպարէզը աղմկողինն է, ուռուցիկ բառերին և վսեմ մտածութիւններով խաղացողներին։*

*Աջ ու ահեակ ժողով, աջ ու ահեակ, փողոցների անկիւններում, պարտէզների մէջ, սօթակէզ արևի տակ, գիշերուայ մթութեան մէջ, փոքր ի շատէ մեծ սենեակներում—ճառախօսներ։ Խօսում էջտղան, խօսում է աղջիկը, ծերունին ու պառաւը։ Խօսում են՝ երկարամեայ հնութեան դատապարտուածի արբշիռ տենչերով, խօսում են յախուռն, այն՝ ինչ րոպէապէս մտածում են, այն՝ ինչ գալիս է իրենց մտքին։ Շատ են լռել. մոռացել են իրենց ձայնի հնչիւնը. խօսում են և ականջ դնում։*

*Այդ նոյնը՝ գրական ասպարէզում։ Գրաքննական սպանդանոցը մորթոտում էր և խեղդում գրչի ամէն լայն շարժում։ Գրիչը շղթայուած էր՝ լեզուից աւելի։ Գրիչը գերի էր և տրուել ու արդէն քննողութեան աստիճանի ընկել էր ու աղտոտուել։ Այժմ—ի բաց ամէն կաշկանդումն, կարող է գրել ամէն ոք. գրել՝ ինչ կամենայ. գրել՝ ինչ որ ունէր ասելու և չէր յանդգնում։*

*Եւ աջ ու ահեակ՝ թերթեր ու թերթիկներ են, որ պտոյտ են գալիս հրապարակում։ Գրում է և թերթեր հրատարակում գըպրոցական աշակերտը, բանուորը, զինուորը, բուրժուան... Գրում է, թերթերի հեղեղ արտադրում ամէն կուսակցութիւն, ամէն հոսանք։*

*Լաւ է, շատ լաւ է, երբ խօսքն ու գրիչը լիովին թօթափում են իրենց կաշկանդիչ կապերը, երբ կարող են արտայայտել նրանք իրենց ուզածը, իրենց խորհածը... Բայց լաւ է և աւելի լաւ, երբ այդ ուզածն ու խորհածը լինում է խելացի և երևան է գալիս խելացիօրէն...*

Գիտեմ, որ այլեւս անհանդուրժելի են վարչական, պետական ու գրաքննական սանձերը՝ գրչի և խօսքի համար։ Գիտեմ, որ ոչ ջնջող կարմիր մելանը կայ այժմ և ոչ ժանդարմային զըսպիչ միջոցները՝ որևէ թերթի կամ հրատարակութեան համար։ Գիտեմ սակայն և այն, որ կայ բարեկրթութեան, գրչի ազնուութեան և քաղաքավարութեան սանձերը, որոնք պէտք է որ զըսպեն մարդու վատ կիրքերը և չը թողնեն նրան անվայել լուտանքների դիմելու,—լինի նոյնիսկ դէպի մեր բռնակալները՝ թշնամիները և կամ դէպի ամենավատթար կեղեքիչները ուղղուած, Լինենք բարեկիրթ։ Ասպետութիւնը չմոռանանք։ Ո՛չ մի դէպքում։ Նոյնիսկ մեր կատաղութեան օրերին։ Զարնենք ուժգնօրէն, մահացնող հարուածով, ոչնչացնող թափով զարնենք, բայց երբ թշնամին ընկել է և զինաթափ է—չը հայհոյենք ու զզուելի բառերով չարտայայտենք մեր զայրոյթը։ Մանաւանդ՝ երբ գրում ենք. մանաւանդ՝ երբ կարդում է մեզ ժողովուրդն ու նոր սերունդը։

Վ. Փափազեան

## ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ (*)

Արդեօք Կովկասի պարէնաւորման գլխաւոր լիազօրին արած դեկուցման առթիւ էր թէ առկախ դրանից, սեպտեմբերի 20 ին գլխաւոր լիազօրը շտապ գրութեամբ տեղեկացնում է Ընկերութեանս պարէնաւորման բաժանմունքին, որ Կուբանի պարէնաւորման կոմիտէին կարգադրութիւն է արուած շուտափոյթ ուղարկել գաղթականների համար ալիւր. ուստի առաջարկում է անմիջապէս փոխադրել այն կոմիտէին գաղթականների համար յատկացրած 187 վագոն ալիւրի արժ՛քի կէսը։

Կասկած չէր կարող լինել, որ այդ գրութիւնը մեծ ուրախութիւն պատճառեց մեզ։ Նոյն օրը, այսինքն սեպտեմբերի 20ին Ընկերութիւնս հեռագրով փոխադրեց յիշեալ կոմիտէին 400 հազար ռուբ., յոյս ունենալով, որ ամենաուշ, քան 2 շաբաթուայ ընթացքում, տեղեկութիւն կըստացուի ուղարկուած ալիւրի քանակի մասին։

Ցաւօք սրտի այդ յոյսերը չարդարացան և գաղթականները, որոնք տեղեկացել էին այդ մասին, իրենց միանգամայն յուսախաբուած համարեցին։ Այսօրինակ դրութիւնը և պահեստապետներից ստացած ծայր աստիճանի յուզիչ հեռագիրը մեզ ըստիպեցին հոկտեմբերի 11-ին մի գրութիւն ևս գրել պարէնաւորման գլխաւոր լիազօրին, որի բովանդակութիւնը աւելորդ չենք համարում ընթերցողի հետաքրքրութեան բաւարարութիւն տալու համար, ամբողջութեամբ զետեղել այստեղ. «Մեր կազմակերպութիւնը, որին կառավարութիւնը յանձնել է Կովկասի ֆրոնտի 300,000 գաղթականների պարէնաւորման գործը և որը պէտք է ստանայ ամսական 187 վագոն ալիւր՝—յուլիսին և օգոստոսին ստացել է ընդամէնը 21 վագոն և սեպտեմբերի 1-ից յետոյ մինչև օրս այլևս ոչ մի վագոն ալիւր չէ ստացել։ Գաղթականների համար խիստ ծանր կացութիւն է ստեղծուել, եղել են սովամահութեան դէպքեր, հաց փնտրելու համար գաղթականները տեղից տեղ են փոխադրւում։ Գաղթականների սպառնալիքի տակ պահեստապետները թողել են պահեստները և հեռացել։ Գաղթականների րայոնական ներկայացուցիչները անընդհատ գալիս են Թիֆլիս և անյապաղ օգնութիւն պահանջում։ Մենք գտնում ենք քաղցած գաղթական մասսաների կողմից սպառնալիք էքսցեսների նախօրեակին։ Անհրաժեշտ է շտապ կարգադրութիւն անել՝ ուղարկել մեր հացէին, համաձայն որոշուած նորմայի, առանց ուշացնելու և միաժամանակ, առնուազն 50 վագոն ալիւր։ Ձեր անելիք կարգադրութեան մասին խնդրում ենք մեզ տեղեկացնել»։

Այս գրութեան պատասխանը մինչև օրս էլ ստացուած չէ. միայն հոկտեմբերի վերջերին, երկու ամիս ոչինչ չստանալուց յետոյ վերջապէս Ընկերութիւնս ի պատասխան իր բոլոր դիմումների՝ ստանում է 3 վագոն ալիւր և 2 վագոն ցորեն։ Ի՞նչ չափով պէտք է օգնութեան գայ Ընկերութիւնս այդ քիչ ալիւրով 300.000 գաղթականներին—դա թողնում ենք ընթերցողին դատելու։ Միայն փաստը նրանումն է, որ նման պայմաններում գործը շարունակելը միանգամայն անհնարին է դարձել, երբ մեր արդարացի բողոքները մնում են «ձայն բարբառոյ յանապատի»...

Եւ երբ Ընկերութիւնս գործի սկզբում ոչ մի ջանք չէր խընայում, որպէսզի գաղթականներին յարմարութիւն տայ—աւելի մօտիկ կէտերից օգտուելու համար մթերքներով, բացել այս կամ այն պահեստը, այժմ իրենից անկախ պատճառներից հրամայողական պահանջ է դառել մէկը միւսի յետևից փակել պահեստները։

Գաղթականների պարէնաւորման հարցը այս րոպէիս մեր չարչարուած ազգի ամենահրատապ խնդիրներից մէկն է. տեղական ժողովուրդը մի կերպ կարող է իր գոյութիւնը շարունակել, բայց սոված և կիսամերկ գաղթականութիւնը միանգամայն սովի սոսկալի մղձաւանջն է ապրում։ Եթէ մենք կարողացանք մեր թիւրքահայ հայրենակիցների գէթ մի մասը փրկել կոտորածից, ևս առաւել պիտի ամեն ջանք թափենք այդ մնացորդները ամեն միջոցով պահպանել և սովամահութեամբ չսպանել։ Հայ ժողովուրդը պարէնաւորման մարմինների ամենալուրջ ուշադրութեան պիտի յանձնի այս էական խնդիրը։

Վ. Բաղդասարեան

## ՀԱԿԱՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

Ձակատագրի մի դաժան ու մութ ձեռք խաղում է անդադար Ռուսաստանի գոյութեան հետ։ Ութնամեայ ազատարար յեղափոխութիւնը մի երերուն տաշեղի նման օստոստում է շարունակ, առանց կարողանալու մի հաստատուն ու մնայուն հանգրուան ստեղծել իրա համար։

Ինչպէս որ ցարիզմը, իր բոլոր ապականութիւններով ու

*) Տես «Համբաւաբեր»-ի № 35

շղթաներով միասին գահավիժուեց մէկ անգամից, այնպէս էլ նորածիլ յեղափոխութիւնը գահավիժում է քաղաքականապէս տըհաս գործիչների ձեռքով։

Յեղափոխութեան սկզբից ի վեր, ռուս ժողովրդի խելացի և հեռատես մարդիկ, որոնք ոչ պակաս նպաստել էին յեղափոխութեան առաջ գալուն, պնդեցին ու հազար անգամ կրկնեցին, որ «ճառերով» ու ցնորամիտ լոզունգների յետևից ընկնելով՝ անկարելի է կառավարել երկիրը, երբ մանաւանդ նա ներքնապէս քայքայուած և ուժասպառ է, երբ թշնամին իր հզօր բանակներով կանգնած է ճակատ առ ճակատ։ Բայց այդ բոլոր թելադրանքներն ու խօսքերը մնացին անզօր, համարուեցին «բուրժուական» և նոյնիսկ յեղափոխութեան թշնամի նկատուեցին այն մարդիկ, որոնք տարիներից ի վեր այդ յեղափոխութեան համար էին աշխատել և չարչարուել։

Բոլշևիզմը, որ իր ցնորամիտ և կործանարար սկզբունքներով երևան եկաւ և ազատօրէն ուռճացաւ, կամաց, կամաց իր թունաւոր սերմերը ցանեց բանակի շարքերում և պատճառ դարձաւ նրա կազմալուծման ու քայքայման։

Երբ մի տեղ զօրքը թողնում է իր զինուորական պարտականութիւնը և զբաղւում քաղաքականութեամբ, երբ նրա մէջ պակասում է հայրենասիրութեան զգացում, կարգապահութեան ոգին և նրանց փոխարէնը իշխում է թուլութեան ու պարտազանցութեան ոգին, նրանից այլևս ոչինչ չի կարելի սպասել, բացի չարիքից. և բոլշևիզմը դժբաղդաբար միշտ էլ ձգտեց և միշտ էլ հասաւ իր չարաղէտ նպատակին։

Այս անգամ բոլշևիկների սարքած դաւադրութիւնը աւելի սոսկալի եղաւ և աւելի լաւ պատրաստուած։ Մարդս զարմանում է թէ ժամանակաւոր Կառավարութիւնը իր բոլոր փունկցիաներով ինչ է շինում Պետրոգրադում, ինչպէս է թոյլ տալիս այդպիսի հակայեղափոխական շարժումները, երբ թշնամին հրըկում է մայրաքաղաքի դռների առաջ։ Հեռագիրները հաղորդում են, որ նոյնիսկ միլիցիան տեղեկութիւն չի ունեցել այդ հսկայ դաւադրութեան մասին։

Բոլշևիկների շարժումը. ոչ միայն հարուած եղաւ յեղափոխութեան, այլև մի նոր պատեհութիւն տուեց Գերմանիային՝ իր ծրագիրները աւելի ազատօրէն գործադրելու։

Բարեբաղդաբար Կերենսկին ճակատի զօրքերի գլուխն անցած՝ մայրաքաղաքի վրայ արշաւելով կարողացաւ ապստամբութիւնը խեղդել։ Թէև վերջին անցքերի մասին տակաւին ստոյգ տեղեկութիւններ չկան, բայց երևում է, որ այս անգամ ևս վիժեց բոլշևիկների դաւադրութիւնը, որ իր արձագանքը գտաւ դժբաղդաբար գաւառներում։

Մոսկուայում ևս տեղի է ունեցել քաղաքացիական կռիւ, եղել են սպանուածներ և վիրաւորուածներ թէ բոլշևիկների և թէ կառավարութեան հաւատարիմ զօրքերի կողմից։

Ամեն պարագայի տակ այդ արիւնահեղ և դաւադիր շարժումը ջլատելու և հիմնիվեր կործանելու միակ մէկ միջոց կայ— Կերենսկու վերջին ժամանակներս յայտարարած միջոցը՝ «երկաթ և արիւն»։ Եթէ երկաթով չխեղդուի ու բոլորովին չզսպուի բոլշևիզմը, նրա սերմերը, նրա թողած թունաւոր մթնոլորտը դարձեալ պիտի բռնկին ու բոցավառեն ամբողջ պետութիւնը։

Առանց այն էլ Ռուսաստանը պարենաւորման սոսկալի ճգնաժամի պատճառով, դառել է դիւրավառ և ջղագրգիռ, և ամեն մի շարժում, ամեն մի կայծ կարող է դիւրութեամբ բռնկել ու վառել երկիրը։

Եթէ իրապէս ճնշուած է բոլշևիկների դաւադրութիւնը, բայց վտանգը, նրա պատճառած սարսափը երբէք չի հեռացել, ամեն մի նպաստաւոր մթնոլորտ կրկին երևան կը բերէ այդ շարժումը, ճիշդ այն օձի նման, որի մարմինը բզքտուած, ծուատուած է թէև, բայց գլուխը առողջ է և ընդունակ ամեն ինչ թունաւորելու։

Կառավարութեան բռնած դիրքից կախում ունի երկրի ապահովութիւնը. եթէ նա եղաւ ուժեղ, հաստատուն և կարողացաւ զօրաւոր կերպով երկրի ներքին քաղաքական ճգնաժամը վանել ու միւս կողմից բանակը կազմաւորելով թշնամուն հարուած տալ և շուտափոյթ հաշտութեան ճանապարհ բանալ—կարելի է յուսալ որ երկիրը պիտի փրկուի ու վերականգնուի։

Կառավարութեան ձեռք առած միջոցները և բռնած դիրքը այսուհետև մեզ հնարաւորութիւն պիտի տան փրկութեան կամ կործանման իրողութիւնն ըմբռնելու։

Ալ. Մանուկեան

## ԱՐՀԱՒԻՐՔԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԷՆ

Տրապիզոնի կոտորածներու և նման ոճրային աղէտներու մասին ծանօթութիւններ հաւաքելու համար, օր մը երբ ման կուգայի նորեկ գաղթական-որբերու մէջ, Աննիկ Տէլիպալթայեան անունով վտիտ ու դեղնած դէմքով 12 տարեկան աղջկան մը պատահեցայ որ ինծի այսպէս պատմեց.

«Հինգ հարիւր հոգիի չափ ջահել աղջիկներ էինք, երբ մեզ առաջ դպրոցի մը մէջ ամփոփելով, սկսան մէկ-մէկ թուրքերու մէջ բաժնել։ Երկու օր վերջ մօտ 40 տարեկան գիւղացի թիւրք մը եկաւ ու ականջիս մօտենալով. «քու հայրդ բարեկամս էր ըսաւ. անոր յիշատակին համար կուզեմ որ քու կեանքդ ազատեմ և քեզ հետս տանելով զաւկիս պէս պահեմ»։ Չորս տարեկան փոքրիկ եղբայր մը ունէի հետս աղաչեցի որ ան ալ միասին առնէ. Նախապէս դժկամակեցաւ, բայց շատ պաղատանքներուս վրայ վերջիվերջոյ համակերպեցաւ։ Ու մենք, քոյր-եղբայր, երկուքով գնացինք այդ գիւղացիին հետ։ Մեզ նաւակ նստեցնելով տարաւ Էլէվի կոչուած փոքրիկ քաղաքը, անկէ ալ 4 ժամ հեռու Սէտէկէօր գիւղը։ Հոն նկատեցի որ ոչ մէկ յոյն կամ հայ քրիստոնեայ չկար, որոնց հետ խօսելով գոնէ մայրենի լեզուս յիշէի. բոլորը թուրք էին։ Մարդը 3 հատ թուրք կին ունէր տանը մէջ, որոնք ինձ տեսնելով նախանձ զգացին. ու այդ նախանձը այնքան առաջ գնաց, որ ինձ ու եղբօրս ամեն օր սկսան սարսափելիօրէն ծեծել։ Օր մը, թիւրքը իմ արցունքներս տեսնելով, պատճառը հարցուց և ինք ալ իւր կիները յանդիմանեց, յետոյ քովս նստելով ըսաւ. «իմ հարստութիւնս, արտերս, միւլքերս, բոլորը քեզ համար են, կեր, խմէ, ու եթէ քեզի անգամ մըն ալ ծեծեն, ըսէ ինծի, անոնց հէրը անիծեմ»։ Եւ իսկապէս ամիսի մը չափ ինձ շատ լաւ խնամեց հարազատ զաւկին պէս։ Գիշեր մը, մօտս գալով, դիտե՞ս, ըսաւ, ես քեզ որչափ կը սիրեմ. այսուհետև դուն ես իմ կինս. միւսները վաղը պիտի վռնտեմ։ Առջի բերան ոչինչ չի հասկցայ իր խօսքերէն, բայց ըմբռնեցի թէ գէշ բաներ է, որ կըսէ։ «Մեղքցիր ինծի, Աստուած ունիս, ըսի. դուն իմ հօրս տեղն ես»։ Այս խօսքիս վրայ կատղեցաւ, գոռաց և ատրճանակը ցոյց տալով. «կը տեսնե՞ս, ըսաւ, մէկ, երկու չկայ, կը խփեմ»։ Բոլոր ջանքերս ի զուր անցան. և վերջապէս . . . աս հալըն ձգեց ինձի . . . ։ Անկէ վերջը սկսաւ իմ թշուառական կեանքս։ Ա՛լ վրաս չէր նայեր. նոյն իսկ շատ ժամանակ անօթի կը թողուր։ Ամեն օր ծեծ, ամեն օր տանջալի աշխատանք։ Անտառ փայտի կը ղրկէին ինձ. արդէն կորեկի

ու ցորենի ծանր բեռներ կռնակովս տուն կը կրէի։ Եղբայրս՝ Հանէսը գիշերները տակը կը շոէր. մարդը ամեն առաւօտ թևէն բռնած պատերուն կը զարնէր. այնքան զարկաւ, որ օր մըն ալ մեռաւ.. ։ Թուրքերուն գերեզմաննոցը թաղեցին. վա՜խ, Հանէս...»։

Աննիկը հեծկլտանքներու մէջ ալ չը կարողացաւ շարունակել ու տեղէն ելլելով ներս գնաց։

Քարացեր, շշմեր էի, ու չէի զգար թէ ինչ է պատմուածքը. երա՞զ. վի՞պ թէ հէքեաթ...։

Արման

---

# Գեղարուեստ

* * *

*Որպէս նուրբ պատկեր կամ անրջային*
*Թովիչ երազանք՝ Քո դէմքն է շողում*
*Անհաս բարձունքից—բազմած լոյս գահին,*
*Ուր լուսափթիթ ամպերն են լողում։*

*Նուրբ ես աւելի՝ ձիւնաթոյր ամպից,*
*Դիւթիչ ու չքնաղ քան շողն արևի.*
*Քան վարդը բուրող՝ մաքուր և անբիծ,*
*Մեղմ՝ որպէս քնքոյշ դողը տերևի։*

*Անմարմին շոգի կուզէի դառնալ,*
*Թեթև ու քնքոյշ այն ամպի նման,—*
*Այս ճահիճ կեանքից վերև համբառնալ*
*Ու գիրկս առնել պատկերդ աննման...*

Ց. Պետրոսեան

---

## ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ

### ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Չը նայած Ռուսաստանում տեղի ունեցող խռովութիւններին, որոշուած է Սահմանադիր Ժողովի պատգամաւորների ընտրութիւնը չը յետաձգել։ Ընտրութիւնը սկսելու է Նոյեմբերի 12-ին։

Հրաւիրում ենք հայ ընտրողների ուշադրութիւնը։ Թող ամեն մէկը զգայ և կատարի իր քաղաքացիական պարտականութիւնը մասնակցելով ընտրութեան։

---

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

1) Պ. Մովսէս Գէորգեան Խիթարեանից ի յիշատակ իւր մօր՝ Սոֆիայի, յօգուտ փախստականների 500 ր.

2) Պ. Գէորգ Ցարութիւնեանից յօգուտ որբերի 15 ր.

3) Պ. Մկրտիչ Քալանթարեանից դպր. նպաստ 600 ր.

4) Թէմիր Խան Շուրայից՝ Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարովսկուց յօգուտ գերիների 10 ր.

5) Մի բաժակ թէյի, 7 սեպտեմբերի արդիւնք 4760 ր. 64կ.

## ՃԻՒՂԵՐ

Կ. Հ. Բ. ընկ. Ախալցխայի ճիւղի որբանոցի օգտին սոյն տարուայ յուլիսի 7-ից մինչև այսօր ստացուել են նուէրներ հետևեալ անձնաւորութիւններից.— Պ. պ. Մ. Մինասեանից 20 ր. Վ. Ղազազեանից 10 ր. Ս. Սվախճեանի միջոցով Ֆուրղուտ գիւղում Հ. Մարտիրոսեանից 6. ր. 50 կ. Տ. Ս. Առաքելեանից 1 ր. Փ. Շլէ Մղդէսեանից 3 ր., Խ. Աղաբաբեանից 2 ր. Բ. Շիրինեանից իր մօր յիշատակին 15ր. Ստ. Մելքոնեանի միջոցով Տամալա գիւղում հանգանակած 125ր. 75կ. մի ռուս զինուորից 3 ր. Ա. Ջնջել Ղոանեանի և Խ. Տէր Կարապետեանի միջոցով եղբ. Ղույումչիբաշեանների պարտէզի վաճառումից նուէր 200ր. Կ. Վարդանեանից 5ր. Ա. Թաւրէզեանից 5 ր. քոյրեր Բարէլեաններից 3ր. Պ. Ճանճուլեանից մկրտութեան հանդէսում հանգանակած 9ր. Հ. Նալպանտեանից 10ր. Խ. տէր Կարապետեանի միջոցով մի ոմնից 100ր. Ս. Մելքոնեանի միջոցով Նիգլսրէպ գիւղի հասարակութիւնից 83ր. Ս. Սվախճեանի միջոցով Գ. Ներսիսեանից 5ր. Աւ. Մնտոյեանից 25ր. Կ. քահ. Տէր Մարտիրոսեանից իր եղբօր յիշատակին 10ր. պ. պ. Մ. Վանցեանի, Ա. Անջելինի Ս. Խնսեանի, Վ. Ղուրբանեանի և Ս. Սվախճեանի միջոցով քաղաքումս հանգանակուած 3063ր. 50կ. Կ. Նալպանտեանից 10ր. Ծ. Ղազազեանից և Լ. Լ. և Օ. Աղաջանեանններից 3ր. Ս. Երոեանից 5ր. Ս. Մարթինեանից 5ր. փոքրիկներ Աբրահամեաններից 7ր. Կ. Տէր Երեմեանից 57ր. Ս. Խաչատրեանից 15ր. Աւ. Մնտոեանից և Կ. Կոլոքուտեանից 25. «Շարժում» ի խմբագրութիւնից Խ. Սուճեանի միջոցով հանգանակուած 70ր. Ս. Սվախճեանի միջոցով հանգանակուած 16ր. օր. Վ. Կարապետեանի և պ. պ. Ե. Մովսեսեանի և Լ. Բախչինեանի միջոցով Աբասթումանում հանգանակուած 3ր. 50կ. Աբասթումանի վարչութենից 50ր. Տ. Մամիկոնեանից և Աշ. Մովսէսեանի որբերին խնձոր ել՛ն.։ Թէ նուիրատուներուն և թէ հանգանակողներին Որբախնամ մասնախումբս սրանով յայտնում է իր շնորհակալութիւնը։

Նախագահ՝ Ո. Թէխմիշճեան

---

# Քրոնիկոն

«Համբաւաբեր»-ի խմբագրութիւնը խնդրում է Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղերին և թերթի թղթակիցներին մանրամասն տեղեկութիւններ հաղորդել ճիւղերի գործունէութեան և զաւառական կեանքի մասին։ Խմբագրու-

թիւնը այդ կերպ յօղուածներին այսուհետեւ լայն տեղ է տալու «Համբաւաբեր»-ում։

—Երեւանից հաղորդում են, որ այնտեղ պարենաւորման գործը սուր կերպարանք է ընդունել. թալաններ և կողոպուտներ են լինում փողոցների մէջ։

— Չորեքշաբթի, նոյեմբերի 8-ին Կոնսերվատորիայի դահլիճում Վ. Փափազեանը պիտի խօսի «Թիւրքահայ գրականութիւնը մինչև 90-ական թուականները» նիւթի մասին։

—Պարիզում սկսել է հրատարակուել «Վերածնունդ» անունով կիսամսեայ թերթը, որի խմբագիրն է տոքթ. Լ. Համբարձումեան։

—Հ. Ժ. կուսակցութեան լիազօրները՝ Ս. Յարութիւնեան և Հ. Առաքելեան Օզակոմին դիմելով, յայտնեցին կուսակցութեան վճիռը Կովկասեան զեմստուոյի մասին։

—Բագւում Միք. Պապաջանեանը յորդորել է հայ դեմոկր. կազմակերպութեան գլխաւորներին միանալու Հ. Ժ. կուսակցութեան։

—Հոկտ. 29-ին լրացաւ Վանեցի գրագէտ ու իմաստասէր Խրիմեան Հայրիկի մահուան տասնամեակը։

—Ինչպէս յայտնի է, ժամ. Կառավարութեան կարգադրութեամբ թոյլ տրուած էր հայերին ու վրացիներին ազգային գնդեր կազմելու։ Հայ և վրացի սպաները մեծ եռանդով սկսել են արդէն ազգային զօրամասերի կազմութեան։

—Խնուսից հաղորդում են, որ ռուս զօրքերն ու ժալականները սարսափի են մատնում այդ շրջանի հայ գիւղերը, թալանում ու կողոպտում են կիսամերկ և քաղցած գաղթականներին։

—Այսօր, երեկոյեան ժամը 8-ին Վ. Վալադեանը պիտի խօսի «Պերճ Պռօշեանցը որպէս գեղարուեստական գրող» նիւթի մասին։

—Պետական բանկը հրատարակել է իր հաշուեկշիռն առ 16 հոկտեմբեր, որից երեւում է, որ հոկտ. կիսին թղթադրամ է բաց թողած մէկ միլիարդից աւելի—1,676 միլ. ռ. Ներկայումս շրջանառութեան մէջ է 13,368 միլ. ռ. թղթադրամ, այն ինչ առ 1-ն հոկտեմբերի այդ գումարը 17,29 միլիոն ռ. էր։

Ընդհակառակը, բանկի ոսկու պահեստը գնալով դադարկւում է։ Այսպէս առ 1-ն հոկտ. ոսկի կար՝ դրամ և ձուլածոյ՝ 1,296,468,710։ Մի շաբաթ անցնելուց յետոյ այդ գումարն իջաւ 1,295,637,655 ռուբլու, իսկ առ 16 հոկտ. այդ ոսկու պաշարը հասաւ 1,205,225,732 ռուբլու։

Այդպիսով, այս ամսուայ մէջ, միայն երկու շաբաթուայ ընթացքում ոսկու պաշարը կրճատուեց 1,243,000 ռ.։

—Վրաց ազնուականների հոկտ. 23-ի արտակարգ նիստում որոշուել է ազնուականութեան ամբողջ կարողութիւնը, որ հասնում է 30 միլիոն ռ.լու, յանձնել վրաց ժողովուրդին, որը կառավարելու համար ընտրուելու է յատուկ մարմին, որի մէջ մտնելու են քաղաքական կուսակցութիւնների, քաղաքային ինքնավարութեան, նահանգային և գաւառային զեմստուային հաստատութիւնների և վրաց կրթական կուլտուրական ձեռնարկութիւնների ներկայացուցիչները։

—Նոյեմբերի 2-ից "Кавказъ" թերթն անցնում է Օզակոմի տնօրինութեան, ուտեղ տպագրուելու են միմիայն պաշտօնական գրութիւններ։ Խմբագիր նշանակուած է Վ. Կ. Լանդեն։

—Օզակոմը թոյլատրել է Հ. Կ. Կոմիտէին տալ 82,624 ռ. գաղթականների կարիքների համար։

—Թիֆլիսի ուսուցչական ինստիտուտի առաջին դասընթացքի պարապմունքները սկսուելու են նոյեմ. 15-ից։ Դասընթացքը տեւելու է 3 տարի։

—Երեւանի «Աշխատանք»ը հաղորդում է, որ ամբողջ Կարնոյ նահանգում այժմ ապրող հայութեան թիւը հասնում է 77,750-ի, իսկ ամբողջ Թիւրքահայաստանի գրաւուած վայրերում այժմ ապրում է մօտ 109,525 հայ բնակչութիւն։

—Սարիղամիշից հեռագրում են Կ. Հ. Բ. Ընկ-թեան, որ այդտեղի փախստականութիւնը, մօտ 2500 հոգի, մարտ ամսից նպաստ չեն ստացել, դրութիւնը կրիտիքական է, խնդրում է անմիջական օգնութիւն։

—Էրզրումից հաղորդում են, որ թէ քաղաքում և թէ շրջակայքում վերջին ժամանակներս յաճախացել են հայ փախստականների սպանութեան դէպքերը։ Թիւրքերի տներում տակաւին պահուած հայ աղջիկներ կան, միջնորդութիւն է խնդրւում պէտք եղած տեղը։

—Թիֆլիսում, նոյեմբերի 25-ին գումարուելու է Հ. Ժ. կուսակցութեան 2-րդ համագումարը, որի օրակարգերն են.

1) Հողային հարցի վերջնական ծրագիրը յարմարեցրած Անդրկովկասի պայմաններին.

2) Հայ եկեղեցապատկան և վանքապատկան հողային կալուածների հարցը.

3) Մոմենտի հարցը.

4) Ազգային-տերրիտորիալ աւտոնոմիայի իրաւասութեան սահմանները.

5) Էկստերրիտորիալ ազգային կուլտուրական աւտոնոմիայի իրաւունքները.

6) Սահմանադիր-ռամկավար և ազգային դեմոկրատական կուսակցութիւնների միացման հարցը.

7) Հրահանգ կուսակցութեան պատգամաւորներին Հիմնադիր Ժողովում։

—Վերջացան խաղաղ կերպով Բագուի քաղաքային դումայի ընտրութիւնները, որին մասնակցել են 60 %-ը։ Կադէտները ստացել են 6 տեղ, Դաշնակցութիւնը՝ 17 տեղ, Սոցիալիստական բլոկը՝ 25, Բոլշևիկները՝ 16, Հրէական բլոկը՝ 3, Հայ ազգ. դեմոկր. կուսակցութիւնը՝ 3, Թիւրք «Մուսավաթ» կուսակցութիւնը՝ 14, Մուսուլմանական կազմակերպութիւնը՝ 3։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1